1917 № 33—ՕԳՈՍՏ.-Ի 27. ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ — Լոյս է տեսնում կիրակի օրերը — 10 կոպէկ



ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արտասարդեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից. Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում.

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների մասին խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԱՀԵՂ ԴԱՍԸ

Անցեալ շաբաթ Մոսկուան ներկայացնում էր մի աննախընթաց, պատմութեան մէջ եզակի տեսարան։ Ռուսաստանի բոլոր կողմերից հարիւրաւոր մարդիկ հաւաքուել էին այնտեղ խորհրդակցելու համար թէ ինչ պէտք է անել։ Նրանց հրաւիրել էր ժամ. Կառավարութիւնը։ Ռուսական պետութիւնը կործանման ծայրին է հասել, անկեղծօրէն յայտարարում էր նա։ Ահռելի աղէտի առջև կառավարութիւնը կարիք է զգում լսելու ազգաբնակութեան բոլոր խաւերի կարծիքը։

Եւ խօսեցին ամենքը, ասացին ամեն ինչ, բաց արին բոլոր գաղտնիքները։ Պատերազմական ճակատից եկել էր գերագոյն հրամանատար Կորնիլովը։ Նա էլ զինուորի սրտաբացութեամբ պարզեց թէ ինչ է այժմեան դրութիւնը, և բոլորովին աներկբայելի դարձաւ որ ռուսական մեծ պետութիւնը այսօր կանգնած է խորխորատի ծայրին։

Ամեն ինչ սպառնում է կործանում։ Անասելի կսկիծով է որ ձեռք ես առնում կարդալու ամենօրեայ հեռագիրները։ Ամեն օր նոր և նոր դժբաղդութիւններ։ Զօրքն ահագին զանգուածներով փախչում է իր դիրքերից։ Պետական գանձարանը դատարկ է, որովհետև հարկ ու տուրք չը կայ։ Երկաթուղիական գործը քայքայւում է սոսկալի չափերով։ Ամեն տեղ ա՛նիշխանութիւն։ Ֆինլանդիան, Ուկրայինան ամենաեռանդուն կերպով աշխատում են օգուտ քաղել պետութեան ճգնաժամից, անկախութիւն ստանալ։

Իսկ բոլոր միւս ազգութիւնները, նոյնիսկ ամենաաննշանները, ինքնավարութիւն են պահանջում։ Բարձրացել է սովի ահաւոր ուրուականը, որ սպառնում է լափել զօրքը, ազգաբնակութեան ահագին մասը և մանաւանդ մեր Անդրկովկասը։ Այս միայն հացի սով չէ։ Հագուստի, արդիւնագործութեան բոլոր ճիւղերի սովն է կանգնած պետութեան առջև։ Ֆիզիքական սովին համընթաց է և մտաւոր սովը, վայրենացումը։ Թուղթը, գրիչը, գիրքը դառնում են ունեւորներին միայն մատչելի բաներ.—այս սարսափելի է։ Գլուխ՝կորցրած կառավարութիւնը փող ճարելու համար ահագին տուրքերով արդէն համարեա անմատչելի է դարձրել պոստային, հեռագրական և երկաթուղային հաղորդակցութիւնները ժողովրդական զանգուածների համար։ Թանգութիւնը աճում է առասպելական չափերով։

Այս դրութիւնը յայտնի էր ամեն մէկին, սկսած Ռուսաստանը կառավարող մինիստրներից։ Եւ ամիսներից ի վեր, յեղափոխութեան առաջին օրերից իսկ, լսւում էր ահեղ ազդակը—«Հայրենիքը վտանգի մէջ է»։ Բայց այս սարսափելի խօսքերն էլ կորցրին իրենց նշանակութիւնը, դարձան սովորական կանչեր, որոնք միայն ... ժպիտ են յարուցանում։

Ահա այս համատարած ահռելի իրողութիւնն էր, որ պատկերացրեց ու վաւերացրեց Մոսկուայի պետական խորհրդակցութիւնը մռայլ գոյներով։ Նա վերջացրեց իր նիստերը, ցրուեց։ Մենք առանց նրան էլ գիտէինք, որ սոսկալի է մեր դրութիւնը։ Եւ այժմ ի՞նչ է անում նա մեր փրկութեան համար։

Չը գիտենք։ Իբրև հասարակ մահկանացուներ՝ մենք չենք

կարող իմանալ թէ գոնէ այսուհետեւ ինչ պիտի կարողանայ անել ժամանակաւոր Կառավարութիւնը։ Ահա նա լսեց ձայներ և խորհուրդներ, ստացաւ լիազօրութիւններ։ Յետոյ։ Թող այդ ասեն պատասխանատու կառավարիչները, այն մարդիկ, որոնք իրանց ձեռքումն են պահում պետութեան ղեկը այսպիսի մի դժընդակ միջոցում։

Մենք, մարդկօրէն դատելով, պիտի ամենից առաջ խոստովանենք որ ռուսական այս ամբողջ դժբախտութեան միջոցով պատմութիւնն է որ կրկնում է իւր յաւիտենական, ահեղ դասը։

Մեզ կեղեքում էր սանձարձակ բռնապետութիւնը։ Նա ընկաւ, անսահման ոգևորութիւն պատճառելով մեզ։ Բայց մենք մեր հրճուանքների մէջ մոռացանք որ մեզ կեղեքել կարող է և սանձարձակ ծայրայեղութիւնը։ Պաշտպանուելով բռնապետութեան վերադարձի հնարաւորութեան դէմ, մենք աւելորդ համարեցինք պաշտպանութեան որ և է միջոց սանձարձակ ծայրայեղութեան դէմ։ Ընդհակառակը, բաց արինք նրա առջև բոլոր դռները, տուինք նրան ազատ գործելու բոլոր հնարաւորութիւնները։

Եւ ինչ եղաւ։ Յեղափոխութիւնը կործանող է։ Այս ճիշտ է։ Բայց ճիշտ է և այն, որ եթէ յեղափոխութիւնը միաժամանակ իւր ծոցից չէ հանում ուժեղ ստեղծագործութիւն, այն ժամանակ նա թաղւում է հենց իր կործանած կարգերի աւերակների տակ։ Ռուսական յեղափոխութիւնը մինչև այժմ չէ ցոյց տուել ստեղծագործական կարողութիւն։ Դեռ իր խանձարուրի մէջ նա չը կարողացաւ նկատել որ առաջնակարգ ստեղծագործական աշխատանք ներկայանում է այն հանգամանքը, որ Ռուսաստանը անօրինակ, ահռելի պատերազմի մէջ է գտնւում և ունի իր դիմաց մի անողորմ թշնամի։ Ինքնապաշտպանութեան տարրական հասկացողութիւնը պահանջում էր մոռանալ ամեն ինչ՝ այդ թշնամուն վանելու համար։ Բայց այդ միտքը մոռացուեց, և ընդարձակ ասպարէզ բացուեց զօրքի թիկունքը քանդելու համար։ Մահուան սպառնալիքի ենթարկուած երկրում գլուխ բարձրացրեց և ծայրայեղօրէն բորբոքուեց դասակարգային կռիւը, բերելով իւր հետ տնտեսական և ֆինանսական քաոս, արդիւնաբերութեան անկում։ Երկիրը կորցրեց իր կենսունակութեան հիմքերը։ Ահեղ թշնամու դէմ կանգնած զօրքերի մէջ մտաւ կազմալուծող, քայքայիչ պրոպագանդը, որ և մի կարճ միջոցում ռուսական բանակը դարձրեց կոյր անընդունակ, կարգ ու օրինաւորութիւն մոռացած մարդկանց մի ամբոխ։

Հետևանքներն այսօր մեր աչքի առջև են։ Ռուս սոցիալիստների այն մասը, որ գերմանական պողպատէ բռնապետութեան ճիրանները սրեց և նրանց խրեց Ռուսաստանի սրտի մէջ, այժմ կարող են հրճուել։ Գերմանացիներն այլևս Ռուսաստանը չեն համարում մեծ պետութիւն, յայտարարում են որ նա արդէն իւր մահուան դատավճիռն է ստորագրել։ Ռիգայի ահռելի աղէտը որ այսօր ամբողջ Ռուսաստանի աղէտն է, հաստատում է գերմանական յոխորտանքը։

Հինգ ամսուայ ընթացքում կատարուեց պատմութեան մէջ նմանը չունեցող մի խորտակում։ Զուր է ժամանակաւոր Կառավարութիւնը որոնում փախած Լենինին և զուր է Լենինը թաքցնում իր գլուխը արդարադատութեան ձեռքից։ Ամեն ինչ կատարուած վերջացած է և պատմութիւնն արդէն իր ահաւոր դատավճիռն է կարդացել, որից ազատուել չը կայ մինչև դարերի վերջը։

Այս ծանր ճգնաժամի մէջ պատմութիւնն է որ իր դասն է տալիս։ Եւ վայ այն ազգին, որ խուլ ու կոյր է մնում պատմութեան դասերի վերաբերմամբ։

Շատ է ուշացել Ռուսաստանը։ Բայց դեռ ժամանակ ունի իր նախնական սպանիչ սխալը շտկելու համար։

Կարո՞ղ կը լինի նա մոռանալ ամեն ինչ և ամբողջովին միաձուլուել թշնամուն դիմադրելու, թշնամուն վանելու մտքի մէջ։

Թէ՞ դարձեալ ֆրազները, կուսակցական հաշիւները, տերապետական տենչերը պիտի աջ ու ձախ ծուատեն նրա մարմինը։

Այս հարցերից է կախուած այսօր մեր մեծ հայրենիքի գոյութիւնը։

Պատմութիւնը պատժեց։ Բայց պատմութիւնը դասեր էլ է տալիս։

Եւ ամեն մի ազգ, որ արհամարհում է այդ դասերը, իւր համար կործանման խորխորատ է փորում։

Լէօ

# ԻՆՉՈ՞Վ ԵՆՔ ՄԵՆՔ ՀԻՒԱՆԴ *)

Ազգային ամենամեծ վտանգի վայրկեանին ես կուզենայի խուսափել կուսակցական բանակռուից։ Այժմ կուսակցական վէճերի ժամանակը չէ, այլ լայն միջկուսակցական համախմբման։ Փոխանակ իրար դէմ յարձակուելու, աւելի լաւ կը լինէր միացած ուժերով խորհէինք, թէ ինչպէս դուրս գանք այն ծանր դըրութիւնից, որի մէջ ընկել ենք։

Ինձ թւում է, որ Ռուսաստանի դրութիւնը երբէք այնպէս աղէտալի չի եղել ինչպէս ներկայումս։ Ամենամեծ վտանգը ոչ թէ դրսից է սպառնում, այլ ներսից։ Թշնամին թուլացած է, և, անշուշտ, Ռուսաստանը միացած ուժերով կարող կը լինէր Գերմանիային ջարդուփշուր անել։ Եթէ մենք դրա հակառակն ենք տեսնում, այդ նրանից է, որ Ռուսաստանի միացեալ ոյժը մեզ մօտ ներկայումս գոյութիւն չունի։ Պետական միութիւնը չքանալու վրայ է, և երբեմն թւում է թէ արդէն բացակայում է։

Այդ կործանման փայլուն օրինակը երևան բերեց մեր զօրաբանակը իւր կրած վերջին պարտութեան ժամանակ։ Զօրանակ չէր այդ, այլ՝ զանազան խմբերի արհեստական հաւաքածու՝ առանց ներքին կապակցութեան։ Ամեն մի գումարտակ և ամեն մի գունդ, իրանք իրանց գլխու եղան, և այդ պատճառով էլ եթէ երկու երեք գունդ կորցնէին կարգապահութիւնը՝ կարող էին նրա բաղդը որոշել։

Նոյն երևոյթը մենք տեսնում ենք մի ամբողջ պետութեան մէջ. նա էլ իրենից նոյնպէս մի արհեստական հաւաքածու է ներկայացնում՝ ոչնչով չըմիացուած կամ թոյլ միացուած մասերից—հիմնարկութիւններից, դասակարգերից և հասարակական խմբակցութիւններից բաղկացած, որոնցից ամեն մէնը միայն իւր մասին է մտածում։ Եւ հենց պետութեան ու կազմալուծուած զօրաբանակի միջև եղած այդ օրհասական նմանութիւնից է, որ բղխում են Եգիպտոսի բոլոր պատուհասները, որոնք մեզ սպասում են մօտիկ ապագայում։

Մեր պետականութեան այդ չտեսնուած աւերումը կատարւում է դեմոկրատականութեան և «դեմոկրատացման» դրօշակի տակ։

Հենց այդ է ուրեմն ներկայիս ամենաբնորոշ ու ամենահասկանալի յատկանիշը։

Թւում է, թէ «դեմոկրատացնել» կառավարութիւնը նշանա-

*) Իշխ. Եւ. Տրուբեցկոյի այն շահեկան յօդուածը տպուած է «Рус. Сл.» յում, որը թարգմանում ենք մի քանի կրճատումներով։

Խմբ.

կում է ամրացնել այն, աւելի լայն ու համազգային հիմքի վրայ հաստատել։ Ամբողջ աշխարհում պետութեան «դեմոկրատացումը» պայմանաւորուած է նրա ոյժով։

Բայց ինչպէս մեզ մօտ միայն պետութեան դեմոկրատացումը արտայայտւում է որպէս քայքայող ոյժ։ Պարզ է, որ մեր աչքի առաջ ինչ-որ կոպիտ կեղծում է կատարւում, դեմոկրատիան մեզ մօտ փոխս են գցել, մեզ մօտ նա գոյութիւն չունի։ Այն, ինչ որ մեզանում այդ անունով է յորջորջւում, լոկ անիշխանութիւն է դեմոկրատացման դիմակի տակ։ Անթիւ ապացոյցներով կարելի է հաստատել այդ։

Այստեղ դարձեալ մեր զօրաբանակն է, որ աւելի փայլուն ապացոյցն է տալիս։ Թւում է, թէ՝ «զօրաբանակի դեմոկրատացում» ասելով պէտք է հասկանալ կամ նրա միացումը ժողովրդի հետ, կամ վերածումը կազմակերպուած համազգային ամբողջական գործիքի։ Մեզ մօտ հենց դրա հակառակն է կատարւում. «դեմոկրատացում» ասելով սովորաբար հասկացւում է առանձին մասերի կամայականութիւն. զօրաբանակի ամեն մի քայլի կախում ունենալը բազմաթիւ կոմիտէներից. օրինակ, բանակի, գնդերի և վաշտերի, եզակի հրամանատարութեան ոչնչացումը, և առհասարակ այն ամենը, ինչ որ «միտինգային ռազմագիտութիւն» անունն է կրում։ Հենց ինքը «դեմոկրատացում» հասկացողութիւնը կատարեալ աղաւաղման է ենթարկւում։ Այդ ոչ թէ ժողովրդի տիրապետութիւնն է՝ որպէս ամբողջութիւն, այլ մի մասի տիրապետութիւնը ամբողջի վրայ, առաջին պատահած կազմակերպութեան կամ հենց պատահական ամբոխի տիրապետութիւն, որը իւր կամքը թելադրում է ամբողջին։

Ուշադրութեամբ դիտելով շրջապատող իրականութիւնը, մենք կը տեսնենք, որ հենց դրանում է կայանում մեզ սպառնացող վտանգների ընդհանուր աղբիւրը։ Ոչ ոքի համար գաղտնիք չէ, որ մեր աչքի առաջ զարգացող «փոխադրութեան քայքայումը» կարող է բոլորովին կանգնեցնել երկաթուղու երթեւեկութիւնը։ Սովորաբար այդ երեւոյթը բացատրւում է միահեծան ռեժիմի «հին մեղքերով»։ Չեմ վիճում. այդ մեղքերը շատ են եղել։ Բայց ինչպէս «դեմոկրատացումը» այստեղ էլ փոխանակ բարելաւելու դրութիւնը, աւելի է վատացրել։

Ինչպէս երկաթուղիներին սպառնում է առանց վառելանիւթի մնալու վտանգը։ Որովհետև Դոնեցի քարածխահանքերի բանուորները կամայականօրէն ծայրայեղ չափերով իջացրել են աշխատանքի արդիւնաբերութիւնը։

Ինչպէս երկաթուղիները մնում են առանց շոգեկառքերի, որովհետև նրա նորոգութիւնը կախուած է բանուորների կամքից, որոնք չեն ցանկանում աշխատել։ «Դեմոկրատացումը» այստեղ էլ է նշանակում ժողովրդի թուլութիւն և անիշխանութիւն՝ իբրև ամբողջութիւն. աւելին են՝ աշկարայ արհամարհանք իշխանութեան և ժողովրդի շահերին։ Եւ երկաթուղիների այն անդամալուծութիւնը, որը այդ անիշխանութեան անխուսափելի հետևանքն է կազմում, Ռուսաստանին սպառնում է նրա պատմութեան մէջ չը տեսնուած սարսափներ։

Նոյնպիսի հետևանքների է բերում և գիւղացիների առանձին խմբակցութիւնների կամայականութիւնը. շաքարի արդիւնագործութիւնը երեք քառորդ անգամ կրճատուել է, կաթ չկայ և հացն էլ դժուարութեամբ է ճարւում։ Միայն «փոխադրութեան քայքայումով» չի բացատրւում այդ։ Այդ առաջանում է նրանից, որ ազգաբնակութեանը բոլոր յիշած անհրաժեշտ մթերքները հասցնելը ոչ թէ կախուած է իշխանութիւնից, որ ներկայացնում է ժողովուրդը իբրև ամբողջութիւն, այլ՝ գիւղացիների առանձին խմբակցութիւնների կամայականութիւններից։ «Ժողովրդի իշխանութիւնը» գիւղում գործնականապէս նշանակում է որոշ գիւղերի գիւղացիների իշխանութիւնը հարևան կալուածատիրոջ ագարակի վրայ։ Այստեղից մի շարք չարիքներ են բղխում։ Շաքարը չքանում է, որովհետև յափշտակութեան և հողային վէճերի պատճառով ոչնչացւում են շաքարի գործարաններին կից գտնուող ճակնդեղների ցանքսերը։ Կաթը չկայ, որովհետև գրաւուած են բոլոր խոտհարքերը, որոնցով կերակրւում էր կալուածատիրոջ տաւարը. հաց չկայ մասամբ գրաւուած դաշտերում բերքը անխուսափելիօրէն պակասելու պատճառով, մասամբ խռովութիւնների ազդեցութեամբ ցանքսերի կրճատման պատճառով, մասամբ էլ այն պատճառով, որ հացառատ նահանգների գիւղացիների կամքից է կախուած ցորեն վաճառքը հանել շուկայ կամ չը հանել։

Դրան կաւելացնենք, որ այժմ ապահովութիւն էլ չկայ, որովհետև բանտերի կառավարութիւնը կախուած է ոչ այնչափ բանտային վարչութիւնից, որչափ ազատ աքսորականների գիտակից կարգապահութիւնից, իսկ ստացուածքի անձեռնմխելիութիւնը—ընկեր գողերի կամքից։ Սովի և ցրտի թշուառութեանը ևս աւելանում է գողութեան և թալանի համաճարակը։

Պետութիւնը առանց փողի և առանց իշխանութեան՝ կամաց-կամաց կեղծիքի է վերածւում։ Մարտի յեղաշրջումից յետոյ, կառավարութիւնը նախ մի իրաւունք էր վերապահել, իրաւունք՝ յորդորելու և կոչեր գրելու։ Եւ կառավարութիւնը չափազանց նման էր լրագրի խմբագրութեան, որ քաղաքական առաջնորդողներ է գրում։ Հրամաններին փոխարինել էին աղերսանքներն ու պաղատանքները.—Գիւղացիներ, խնդրում ենք, մի յափշտակէք, ի սէր Աստուծոյ ծախեցէք ցորենը. ընկեր-ածխափորներ, խնդրում ենք, գործադուլ մի անէք. ընկեր-անիշխանականներ, խնդրում ենք, մի զաւթէք ուրիշի տունը։

Վերջին ժամանակներս սկսեցին մի քանի ոչ-բաւականաչափ փորձեր անել իշխանութիւնը վերականգնելու։ Առաւելապէս Կերենսկին, ըստ երևոյթին, այդ կողմից լի է բարի ձգտումներով։ Բայց այդ բարի ձգտումները ընդհարւում են ուժեղ արգելքների հետ, հենց որ փոխանակ յորդորների կառավարութիւնը փորձ է անում իշխանութեան թէկուզ շուքը ստեղծելու, իսկոյն դժգոհողների բողոքների փոթորիկ է սկսւում։

Այդպէս ընդունուեց զօրաբանակում կարգապահութիւն մտցնելու գեներալ Կորնիլովի փորձը։ Փոխանակ որ մենք ափսոսանք այն քաջերին, որոնք մեռնում են հայրենիքի համար, մենք ափսոսում ենք այն անպիտան դաւաճաններին և վախկոտներին, որոնք կործանում են հայրենիքը։

Երբ խօսք է լինում պետական իշխանութիւնը ուժեղացնելու՝ մեզ վախեցնում է ամեն մի իշխանութիւն, որ ստիպողականի քիչ նմանութիւն ունի։ Դրա հետ միասին կամայական, յափշտակուած և վերին աստիճանի ստիպողական իշխանութեան գոյութիւնը մեզ մօտ ինչ-որ բնական է համարւում։ Ուստի ժամանակակից ռուս պետական կազմը իրենից ներկայացնում է ոչ մի տեղ չը տեսնուած ու չը լսուած անիշխանութեան և բազմիշխանութեան միացում։ Պետական իշխանութիւնը յափշտակւում է ամեն կողմից. ծոյլն է միայն որ չի կորզում այն։ Ում ասէք պատկանում է նա. բանուորների և այլն խորհուրդների ներկայացուցիչներին, հարիւրեակների կոմիտէներին, առանձին գիւղերին, կամ թէ... անիշխանական կազմակերպութիւններին, և ամենից քիչ՝ իրեն, կառավարութեանը։ Մասնակի դէպքերում իշխանութիւնը յափշտակւում է չես իմանում ում կողմից,—ինչպէս պետական այն աւտոմոբիլները, որոնք յեղափոխութեան սկզբի օրերում կարելի չէր գտնել, որովհետև յայտ-

նի չէ ձեռ էին տալիս նրանց անյայտ շեֆերները, որոնք գործում էին «յանուն ժողովրդի»։

Մի կողմ թողնենք յանցաւորներին։ Աւելի լաւ է խօսենք այդ իշխանութեան յափշտակութեան և չքացման ընդհանուր պատճառների մասին։ Նախ այդ իշխանութեան մասին ժողովըրդական խաւերում շատ տարրական հասկացողութիւն է տիրում. վայրենի հասկացողութիւնից բղխած նոյն համանման իշխանութիւնն է, որ նկատւում էր մեզ մօտ նախքան Բոլշևիկեան շըրջանը։ Ազատութիւնն այժմ էլ մութ խաւերում հասկացւում է որպէս բռնութեան և ճնշման հասկացողութիւն, որպէս ոչ ոքի չը վճարելու ազատութիւն։ Այդ նշանակում է իշխանութեան ամբողջութիւն՝ պարտականութիւնների կատարման բացակայութեամբ։

Այստեղից էլ ծագում է դեմոկրատիայի կեղծումը։ Ժողովըրդի իշխանութիւնը, որպէս ամբողջութիւն, հենց այդ պատճառով էլ փոխարինւում է առանձին դասակարգերի, միութիւնների և խմբակցութիւնների վայրենի կամքով, որոնք յափշտակել են իշխանութիւնը։

Սոսկալի հարուածները զօրաճակատում և առաջիկայ ձըմրան սովի և սառնամանիքի սարսափները, պարզ ցոյց են տալիս իրերի նման դրութեան անթոյլատրելիութիւնը։ Ժամանակ է վերջապէս հրաժարուել իշխանութեան մասին ունեցած այդ պարզամիտ հասկացողութիւնից և իշխանութեան գոյութեան մասին ունեցած մեր անմիտ երկիւղից։ Երկուսից մէկը,—կամ Ռուսաստանը նոր իշխանութիւն կը ստեղծի կամ կը կործանուի։ Դրա հետ կապուած է ամենամեծ հարցը.—ո՞վ կը տայ Ռուսաստանին այդ իշխանութիւնը, որին նա խիստ ծարաւել է։ Արդեօք նա ծնունդ կառնէ դեմոկրատիայի ծոցում, թէ առաջ կը գայ դեմոկրատիայի կամքի հակառակ։ Դեմոկրատիայի համար, անշուշտ, կեանքի և մահու խնդիր է այդ։

Ով որ ուզում է փրկել դեմոկրատիան, պէտք է իմանայ, որ ժողովրդի իշխանութիւնը՝ գիւղացիների, զինուորների կամ բանուորների իշխանութիւնը չէ։ Կամ դեմոկրատիան կը ստեղծի դասակարգից, կուսակցութիւնից դուրս իշխանութիւն, կամ թէ նա կը կործանուի։

Այժմ ռուս ժողովուրդը ինքը չի կանչել վարեագներին, այլ նրանք իրենք իրենց կը գան՝ առանց հրաւիրուելու։ Վարեագը կարող է լինել գերմանական նոյն այն ֆելդֆեբելը, որը արդէն պատռել է մեր զօրաճակատը։ Եւ եթէ մենք նրա ոտների տակ ընկած լինենք, նա մեզ չի հաւաքիլ, այլ բաժան-բաժան կանի։ Անկախ Ուկրայինա, անկախ Լիտվա, Ֆինլեանդիա, Կովկաս, Ղրիմ, Գերմանիան Ռիգայում և Ռևելում—ահա ինչպիսի ձև կը ստանայ այժմեան Ռուսաստանը։ Իսկ մեզ բաժին կը մնայ Մոսկուան՝ փետրահան արուած, քաղցած, ծովերից կըտրուած և գերմանական բռնակալութեանը հարկատու։

Այս այն խորխորատն է, որը մենք ինքներս իսկ փորում ենք մեզ համար։ Տեսէք թէ ինչպիսի յաջողութիւն ունեն այժմ անջատողական ձգտումները։ Ուշադրութիւն դարձրէք, թէ ինչպիսի դիւրութեամբ ինքնավարութեան պահանջները փոխւում են կատարեալ անկախութեան պահանջի։ Այժմ ծոյլն է միայն որ ինքնավարութիւն չի պահանջում անկախութեան հետ միասին։ Թերևս անջատողական այդ ձգտումների մէջ տարօրինակը նրանց ընդհանուր չարժանիքն է։ Այդ խորտակուող պետական նաւից փախչելն է, որպէս զի նրա որ և է բեկորները ազատեն, որովհետև ամբողջը ազատելու յոյսը տատանուել է։

Արտաքին հարուածը չէ, որ սպառնում է կործանել մեզ, այլ ներքին ինքնակազմալուծման գործողութիւնը։ Բայց որքան էլ վտանգաւոր լինի այդ ներքին ախտը, մենք պէտք է ոյժ ունենանք նրան դիմագրաւելու։ Մեր միակ փրկութիւնը կայանում է պետական գիտակցութեան կատարեալ զարթնեցման, դեմագոգիական շշմումից ազատուելու մէջ։ Ներկայ ծանր դրութիւնից մեզ դուրս բերել կարող է միայն ազգային, ոչ-դասակարգային իշխանութիւնը՝ լայն լիազօրութեամբ լիազօրուած, և որը կարողանայ ոչ թէ յորդորել, այլ՝ հրամայել։

Վերջապէս իշխանութեան վերականգնումը չի կարող սահմանափակուել միմիայն զինուորական շրջանում։ Պետութեան ճակատագիրը չը պէտք է կախուած լինի բնակչութեան առանձին խմբակցութիւններից։ Ես հասկանում եմ, որ կառավարութիւնը կարող է և պէտք է հայրենասիրութեան կոչ անէ քարածխահանքերի և երկաթուղային արհեստանոցների բանուորներին։ Բայց ի դէպ, եթէ այդ կոչերը ազդեցութիւն չունենան, իշխանութիւնը պէտք է զինուած լինի բոլոր հարկաւոր ստիպողական միջոցներով ներգործելու, նոյնիսկ քրէական պատիժներ սահմանելով գործադուլների դէմ, որոնք վտանգ են սպառնում պետական կեանքին։ Նմանապէս իշխանութիւնը պէտք է օգտուի բոլոր միջոցներից, որպէս զի յափշտակութիւններ տեղի չունենան և զօրքին ու քաղաքներին հաց մատակարարուի։

Վտանգի չափազանցութիւնը պահանջում է և արտաքոյ կարգի լիազօրութիւններ։ Թող դեմոկրատիան վճռի, վերջապէս, իր ձեռքն առնել իշխանութիւնը, այլապէս իշխանութիւնը նրա ձեռքից կը խլուի։ Մեր առաջ դրուած է անխուսափելի մի ծանր հարց. կամ ուժեղ դեմոկրատական իշխանութիւն է ստեղծուելու կամ թէ ռէակցիոն իշխանութիւն է առաջ գալու—երրորդ ճանապարհ լինել չի կարող։ Իսկ նրանց, որոնք կառավարութեան լիազօրութիւնների լայնացումը նկատում են հակադեմոկրատական և ռէակցիոնական միջոց, ես կը պատասխանեմ մի չորս հարցերով։

Միթէ դեմոկրատակա՞ն է ամբողջ ազգի ճակատագիրը դնե՞լ այնպիսի դրութեան մէջ, որ կախուած լինի երկու գնդերի վըճռից, որոնք կռուել չեն ցանկանում։ Կամ զօրքը առանց հացի կը մնայ՝ գիւղացի հացահատերների առանձին խմբակցութիւնների եսականութեան պատճառով, առանց ձկան—Վոլգայի տակառագործների գործադուլի պատճառով։ Միլիոնաւոր բանուորներ փողոց կը շպրտուեն առանց ապրուստի միջոցների՝ իրենց նման բանուորների անփութութեան պատճառով, որոնցից կախուած է գործարաններին ածուխ մատակարարելու գործը։ Ձմեռը քաղաքի աշխատաւոր դասակարգի որդիները կը հիւանդանան և կը մեռնեն, որովհետև կը մնան առանց կաթի, շաքարի և հացի։ Ես ձեզ հարցնում եմ՝ դեմոկրատակա՞ն է այս թէ ոչ։

Ո՞րն է աւելի դեմոկրատական. այս քաղցած անիշխանութի՞ւնը, որը ամբոխին անթիւ տանջանքներ է խոստանում, թէ այն ստիպողական իշխանութիւնը, որը միայնակ կարող է փըրկել նրան այդ դրութիւնից։

Եթէ Ռուսաստանը կենսունակ ազգ է և ոչ դիակ—նա կը վերստեղծի այդ իշխանութիւնը, որը կը փրկէ պետութիւնը կործանումից, իսկ մենք, ռուս քաղաքացիներս, պէտք է ցոյց տանք մեր սէրը դէպի հայրենիքը ոչ թէ սովորական «դեմոկրատական» ֆրազներով, ոչ թէ դիմագոգիական շողոքորթութիւններով, այլ ազգային անհրաժեշտութեանը հպատակուելու վճռականութեամբ և բոլոր հարկաւոր զոհաբերութիւնները անելու պատրաստակամութեամբ։ Առաջին զոհաբերութիւնը մեր հայրենիքին պէտք է կայանայ նրանում, որ մենք վճռականապէս հրաժարուենք ամեն տեսակ կեղծումից։ Որպէսզի ռուս դեմոկրատիան զօրեղ լինի,

պէտք է «դեմոկրատիա» բառը վերակոչել իր իսկական նշանակութեամբ, այն է՝ ժողովրդի իշխանութիւն։ Այդ իշխանութեանը պէտք է մենք կոչ անենք ու նրան միայն հպատակուենք։

Իշխ. Եւգենիյ Տրուբեցկոյ

# ԸՆԿԵՐԱՅԻՆ ՅԵՂԱՇՐՋՄԱՆ ՕՐԸ

## Ա.

Քաղաքակրթութիւնը հիմնուած է առաջդիմութեան վրայ։ Տնտեսական զարգացման և մտաւոր նուաճումներու շնորհիւ մարդուն ապահովել բարեկեցութեան ամեն դիւրութիւն, ահաւասիկ մարդկային կեանքի պատմութիւնը, մէկ երկու բառերով։

Մինչև տասնըեօթներորդ դար, մարդիկ երբեք չէին խորհած այլ եւ բանաւոր էակ մը չըլլալու, այլ եւ չզարգանալու, այլ եւ քաղաքակիրթ չըլլալու մասին. համայնագիտականներու դարուն է, որ սկսաւ մարդկային թշուառութեան և տառապանքներու մասին նոր տեսութիւններու շրջան մը։

Ժան-Ժակ Ռուսօ, մարդկային իմացականութեան այդ գերագոյն ջահը, վերլուծելով ընկերային կեանքի երևոյթները, քննելով մարդկային և կենդանական բոլոր յատկութիւնները, ի վերջոյ սա վճիռը արձակեց «դէպի բնական կեանք»։

Մեծանուն Դարուինը, մեզի ապացուցելով մարդկային ֆիզիքականին բնաշրջման հազարամեակ դարերու երևոյթները, տանելով մեր մարմինը մինչև նախնական բջիջը, որ բոյսին և միջատին միջև տարբերութիւն իսկ չունի, որ հանածոներու նըման արտաքին աճումով կը զարգանայ, մեզի ցոյց տուաւ տիեզերական կեանքի բնաշրջման մեծ վարկածը։

«Դէպի նախնական կեանք». Ի՞նչ բան էր սա բացագանչութիւնը. և իսկապէս կա՞յ խորհող և զգացող մարդկութեան մէջ, աշխարհի երևոյթները և մարդկային տառապանքը քննող մարդ մը, որ իր կեանքի հասունութեան առաջին վայրկեաններուն արձակած չըլլայ այդ բացագանչութիւնը։ Ատիկա կը նշանակէ «դէպի անգիտակցութիւն, դէպի մոռացումը այս այրող մտքին, դէպի նախնական պահանջները, դէպի ֆիզիքական և հոգեկան բնակչութիւն, դէպի ազատագրում բոլոր այլասերումներու, բոլոր մարմնաւոր և հոգեկան ոչ կենդանական ճիգերու։ Բնական կեանքը, այսինքն ապրիլ այնպէս ինչպէս բնութեան տուած բոլոր ազդակները կը պահանջեն, անոնց մերժումը ցաւ և անոնց գոհացումը ուրախութիւն կը պատճառեն, այսինքն ֆիզիքական աճում և ֆիզիքական անման կասում։

Այդ ելքը միթէ կարելիութիւն է։ Միթէ կարելի՞ է որ մարդը յանկարծակի կանգ առնէ իր ներկայ ճաշակներով և հոգեկան շաղախով, մտքի և զգացումներու նրբացումով, ֆիզիքական տխեղծ ու անպատասխանատու վիճակով, յանկարծ դադրի այլ եւ այդպէս շարունակելէ և միւս կողմէ իր իմացականութեան դէմ գերմարդկային ճիգ մը ընէ և դառնայ նախնական կեանքին։—Ոչ։

Մարդկային իմացականութեան տիրապետութեան ուժը, չի տարածուիր մինչև տիեզերական կառուցուածքի կամքին իշխելու, մարդը չի կրնար իր իսկ վրայ տիրող օրէնքները վերիվայրել, մարդը կրնայ ուսումնասիրել տիեզերական մեծ օրէնքը, բնաշրջումը (èvolution), որուն յառաջ բերած երևոյթին ընդհանուր իմաստով կըսենք—կեանք, այսինքն ծնունդ մը, հասունացում և վախճան, սակայն մարդը չի կրնար ոչինչ կասեցնել, այդ իր վրայ տիրապետող օրէնքներէ։ Գուցէ մարդկային կատարելութիւնը՝ (գաղտնիքն է ատիկա տիեզերական մեծ հարցարանին) նախասահմանուած է մղուել մինչև այդ տիրապետութեան գերագոյն սահմանները. բայց ներկայի մարդկութիւնը անկարող է ատիկա ընելու։

* * *

Ընկերական կեանքի ներկայ բնաշրջումը, որ այնքան սարսափելի կը թուի Ժան-Ժակ Ռուսոյին, կը կոչուի—քաղաքակրթութիւն։ Հետզհետէ դէպի Գերմարդ ճակատագրական մղում մը, վայրենի բնազդներէ ձերբազատում, ճաշակի, կենցաղի և կեանքի նրբացում, պէտքերու բազմապատկում, պահանջներու կուտակում, ֆիզիքական-հոգեկան կեանքի այնպիսի պայմաններու մղում, որ ուժերու և աշխատանքի աւելի մեծ սպառումի պէտքը կզգացուի, այն ատեն հպատակեցումը բոլոր մնացեալ աշխարհին մարդկային բարեկեցութեան համար, ֆիզիքական ուժի ջըլատում և իմացական ուժի փայլատակում, մարդկային գերութիւն, վերջապէս կեանքի կռիւ։ Ահա նաև քաղաքակրթութեան անողոք միջոցները։

Սակայն մարդկային միտքը չդադրեցաւ խորհելէ, քաղաքակրթութեան նախճիրներու վերացումին համար։ Այլ եւ ընդունուած էր, անհրաժեշտութիւնը և անհրաժարելիութիւնը՝ այդ կեանքէն, ու կը մտածուէր անոր քայլերուն հասնելու համար մարդոց կրած տառապանքները դարմանել։

Այնքան ատեն որ ընկերական կեանքի երակը խճողող երևոյթները անբնական բրտութիւն մը ունէին, այնքան ատեն որ պահանջը դադրած, ատենը անցած անխուսափելիութիւններ կային, դիւրին (այսինքն կարելի) եղաւ զանոնք վերցնել։ Աւատականութիւն-Ազնուականութիւն, ժողովուրդները իրար դէմ պաշտպանելու համար գոյացած այդ դասակարգերը, որոնք քաղաքակրթական բարեկեցութեան գերագոյն բարիքները կը վայելէին, այլ եւ անաշխատ՝ քանի որ նոր պայմաններու ստեղծումով, իրենց պաշտօնը այլ եւ անպէտք դարձած էր, հրապարակէն բշուեցան. անոնց սեփականացուցած զանազան քաղաքակրթական մենաշնորհները տարածուեցան ամբողջ մարդկութեան վրայ։

Այն ատեն մարդիկ սկսան անարգել աշխատել, կրցածնուն չափ աշխատել քաղաքակրթութեան օգտին, և ինչպէս յայտնի է, ազատ մրցակցութեան մեծ օրէնքը դրուեցաւ հրապարակ։

Այդ օրէնքը քաղաքակրթական կեանքի ամենէն մեծ երևոյթն էր։

(Շարունակելի) Լ. Թիւթիւնճեան

# ՀԱՅ ԳԻՒՂԱՑՈՒԹԻՒՆԸ ՍՈՎԻ ՆԱԽՕՐԵԱԿԻՆ

Անդրկովկասում վերջերս մանաւանդ զգացւում է տնտեսական սուր ճգնաժամ։ Գիւղացի դասակարգը պատերազմի հետեւանքով մեծ մասամբ զրկուած է աշխատող ուժերից։

Երկրագործութիւնը համարեա թէ պակասում է։ Գիւղատնտեսական աշխատանքները մեծ չափով տանում են ծերունիները և կանայքը։ Մանաւանդ հայ գիւղացութիւնը շատ է տառապում աշխատող ձեռքերի բացակայութիւնից։ Արարատեան դաշտում, Գանձակի նահանգի և Կարսի շրջանի հայկական մասերում հայ գիւղացութիւնը, որ առաջ տրտնջում էր հողի պակա-

ութիւնից և միշտ համեմատաբար աւելի հողազուրկ դասակարգն է կազմել Կովկասի ազգաբնակչութեան, այսօր կանգնած է սովի ճգնաժամի առաջ։ Սովը վիշապանման իր ճիրանները բացած արշաւում է մեր գիւղերը։

Այս տարի ցանքը համեմատաբար քիչ է եղած։ Եղածն էլ յաճախ մնում է անքաղ աշխատաւորների պակասութեան և երկրի անապահով դրութեան պատճառով։

Մանաւանդ աւազակութիւնը մեծ հարուած է տալիս գիւղատնտեսական աշխատանքներին և արագացնում հայ և թիւրք գիւղացու տնտեսական քայքայումը։

Աւազակութիւնը լարում է նաև երկու հարևան ժողովուրդների յարաբերութիւնը, և այդ չարաբաստիկ երևոյթը անդրադառնում է Կովկասի ընդհանուր վիճակին։

Աւելի քան անխուսափելի է մանաւանդ սովը գաղթականութեան համար։ Կառավարութեան պարենաւորման մարմինները հնարաւորութիւն չեն տալիս Կ. Հ. Բ. Ը. կից կազմուած պարենաւորման բաժանմունքին՝ մթերքներ փոխադրելու գաղթականութեան անհրաժեշտ պէտքերի համար։

Եթէ մեզ մօտ Կովկասում հայ գաղթականութիւնը անվիճելի կերպով տառապում է սովից, հապա երկրում—Տաճկահայաստանում անպայման աւելի սարսափելի կարելի է համարել նրա վիճակը։

Արդէն հատուկտոր հեռագիրները հաղորդում են Ալաշկերտի և ուրիշ գրաւուած շրջանների հայ փախստական ժողովրդի տնտեսական դժնդակ կացութիւնը։ Գրաւուած վայրերից Վանի շրջանը միայն համեմատաբար աւելի ապահովուած կարելի է համարել առժամապէս սովի ուրուականից։ Այնտեղ, Վասպուրականցի գիւղացին՝ պատեհութիւն է ունեցել շնորհիւ իր տոկունութեան և չարքաշ աշխատութեան, բաւականին վարուցանք անել և եթէ յանկարծական նահանջ կամ ուրիշ դժբաղդութիւն չըլինի, Վասպուրականի հայութիւնը պիտի կարողանայ իր ապրուստը մասամբ ապահովել։

Կովկասահայ գիւղացութիւնը սովի ճիրաններից փրկելու համար միջոցներ են ձեռք առնւում, կոպերատիւ հաստատութիւններ են հիմնւում գիւղերում։

Թէ ինչ փրկարար և կենսական նշանակութիւն ունի կոպերացիան հայ գիւղացութեան համար, դրա մասին չարժէ բացատրութիւններ տալ. տնտեսական բացատրութիւնը նշանակութիւն չունի ժողովրդի համար, հարկաւոր է գործնականապէս հասկացնել նրան կոպերացիայի արժէքը։

Հարկաւոր է բոլոր հայ գիւղերում բաց անել կոպերատիւ սիստեմի վրայ հիմնուած խանութներ, որոնք ոչ միայն բաւարարեն տեղական հայ ազգաբնակութեան կարիքներին, այլ և գաղթականութեան կարիքներին։

Կոպերատիւ շարժումը ընտելացնելով և ժողովրդականացնելով, նրա նշանակութիւնը գործնականապէս բացատրած պիտի լինենք գիւղացուն, որը ըմբռնելով դրա աչքառու և փրկարար օգուտը, սիրով և հաւատքով պիտի կապուի այդ գործի հետ։

Պատերազմի, աւազակութեան և ուրիշ պատճառներից թէ ֆիզիքապէս և թէ բարոյապէս ընկճուած է գիւղացութիւնը, եթէ սովն էլ վրայ հասնի, արդէն անկումը կատարեալ պիտի լինի. տնտեսական անկումը պիտի խորտակի բոլոր օդային քարոզներն ու խոստումները, որը ամեն քայլափոխին արւում է անօթի և տառապած ժողովրդին։ Ապահովեցէք նախ նրա ապրուստը, նրա ֆիզիքական գոյութիւնը, ապա նրանից սպասեցէք զոհաբերութիւն։

Զոհաբերութիւն մեր ժողովուրդը արել է և պիտի անի ամեն անգամ, միայն թէ նրա զոհաբերութիւնը չըպէտք է շահագործել նրա ինքնասպանութեամբ և տառապանքով։

Զոհաբերութեան փոխարինումը ընկնում է բոլոր այն վարիչների ու ղեկավարների վզին, որոնք շարունակ պահանջում են, բայց իրենք իրենց ապիկարութեան և անփութութեան պատճառով ոչինչ չեն տալիս։

Կովկասեան բնակչութիւնը, մանաւորապէս հայ գիւղացութիւնը ապրում է այս րոպէիս սովի մղձաւանջի տակ. նա այլևս քայքայուած է տնտեսապէս և ուժ չունի դիմադրելու մէկը միւսին յաջորդող անհարկու հարուածներին։ Հարկաւոր է լուրջ ուշադրութիւն և անդուլ աշխատանք, նրա գոյութիւնը ապահովելու և թեթևացնելու համար։

Թ.

## Գեղարուեստ

### ՎԱՀԱԳՆ

Հրդեհի ստուած, հրդեհ ու կրակ—
Օ, Վահագն արի!—տեսնում եմ ահա,
Որ ծիծաղում ու քրքջում են նրանք
Արնաքամ ընկած դիակիդ վրայ։
Թէ՞ միֆ էիր դու . . . եկան, երգեցին
Մի հին իրիկուն գուսանները ծեր,
Որ հզօր ես դու, հրոտ, հրածին,
Որ դու կը բերես փրկութիւնը մեր . . .
Եւ հաւատացինք՝ հարբած ու գինով՝
Որ դու կգաս, հզօր, մարմնացում ուժի.
Իսկ նրանք եկան՝ արիւնով, հրով
Մեր երկիրը հին դարձրին փոշի . . .
Եւ քարշ տուեցին դիակն արնաքամ,
Նետեցին քաղցած վոհմակներին կեր—
Եւ կեանքի հիմերն անդունդը ընկան
Ու արնոտ միգում ճարճատում են դեռ . . .

Եղիշէ Չարենց

## Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—

—պ. Կար. Շիրինեանից յօգուտ «Շիրինեան» գրադարանի 150 ռ.

—պ. Ա. Մելիք-Ազարեանից դպրոցական նպաստ 900 ռ.

—Շուշանիկ Զուբեանի անուանակոչութեան օրը ժողովուած յօգուտ որբերի 178 ռ.

—Ն. Թումանեանից յօգուտ որբերի 40 ռ.

### ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Դրութիւնը շարունակւում է մնալ անփոփոխ։ Վերջին շաբաթում ստացուած է ընդամենը 4 վագոն ալիւր։

Երբ հարիւր հազարաւոր մերկ և սովին մատնուած գաղ-

թականութիւնը անհամբեր սպասում է օգնութեան, չենք կարող լռել, խնդրին սառն վերաբերուելու շնորհիւ դրութիւնը աւելի կրիտիքական է դառնում։

Մենք «Համբաւաբեր»-ի նախորդ համարում յիշել էինք, որ Ընկերութիւնս նպատակ ունենալով հացի ճգնաժամը թեթեւացնել գետնախնձորի գործածութեամբ, Ախալցխայում ձեռնարկել է գետնախնձորի գնումներ կատարել և յոյս էինք տածել որ Թիֆլիսի նահանգական պարենաւորման կոմիտէն, աչքի առաջ ունենալով դրութեան կրիտիքական լինելը, չի յապաղիլ անհրաժեշտ թոյլտուութիւնները տալ։

Գնումներն արդէն արուած են, բայց ցաւալին այն է, որ մինչև այժմ ձեւականութիւնների պատճառով փոխադրութեան թոյլտուութիւնը ձգձգւում է։

Սովը փաստօրէն սկսուել է. դանդաղելը յանցանք է։ Իրերի դրութիւնը մեզ թելադրում է, որ արդէն ժամանակն է թափ տալ մեր վրայից ձեւականութիւնների հին փոշին՝ նրա աղէտաբեր հետեւանքներից խուսափելու համար, ժամանակը սպասել չը գիտէ, պէտք է զգոյշ լինել ժողովրդի կեանքի հետ խաղալուց։

### ՀԵՌԱԳԻՐԵՐ ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔԻՆ

Վան—Օհանջանեանից.—Ենթարկուեցի քրդերի յարձակման։ Դաղթականները խիստ տուժեցին. սպանուած և վիրաւորուած են 4 սայլապան։ Տաւարը տարան։ Հաղորդակցութիւնը դէպի Վան խիստ վտանգաւոր է դառել. անհրաժեշտ է կտրուկ միջոցներ ձեռք առնել։

## Քրոնիկոն

Մոսկւայում գումարուած պետական խորհրդակցութիւնը վերջացաւ, Ժամանակաւոր Կառավարութիւնը նկատի պիտի ունենայ խորհրդակցութեան մէջ արտայայտուած կարծիքները երկրի դրութեան մասին և ըստ այնմ պիտի դասաւորէ իր գործունէութիւնը։

—Մոսկւայից հաղորդում են, որ Լազարեան ճեմարանի տեսուչ Գեղուլեանովը արձակուած է. ճեմարանը պիտի անցնի հայկական գաղութի ձեռքը. միջոցներ պիտի ձեռք առնուեն մեր հոգևոր դպրոցներից աւարտողներին ճեմարան անց կացնելու։

—Հայ զինուորներ և սպաներ արդարացիօրէն բողոքում են իրենց ծննդավայրերում տեղի ունեցող աւազակութիւնների համար, պահանջում են կտրուկ միջամտութիւն. Երբ արդեօք Անդըրկովկասի իշխանութիւնը իր մրափած աչքերը պիտի բանայ։

—Փարիզում սկսուել է հրատարակուել «Վերածնունդ» անունով թերթը, որ պիտի նուիրուի հայկական արուեստին և պրոպագանդային. Թերթի շուրջը համախմբուած են Ֆրանսայի և հայ կարող ոյժեր։

—Ամերիկահայերի մէջ ստեղծուած ազգ. միութեան կենտրոնական վարչութեան սարքած հանգանակութիւնը տուել է խոշոր արդիւնք և առաջ բերել մեծ խանդավառութիւն։

—Վերջերս ապրուստի ծայրայեղ նեղութիւնից դրդուած հայ գաղթականները մասսայօրէն գաղթում են դէպի Ամերիկա. մեր հայկական մարմինների ուշադրութիւնն ենք հրաւիրում այս աղէտաբեր քայլի համար։

—Վրաց ազգայնամոլ թերթերը հարց են բարձրացրել վրացերէն լեզուն տիրող դարձնելու քաղաքային դումաներում. երևի նրանք մոռացել են, որ ուրիշ ազգութիւնների լեզուներն էլ գոյութիւն ունեն։

—Սահմ. Ժողովի Անդրկովկ. Ընտր. Կոմիտէն տեղեկութիւն է ստացել, որ Սահմ. Ժողովի ընտրութիւնների համար Թիֆլիսի և Քութայիսի վիճակագրութիւնը վերջացել է։

## Համաշխարհային պատերազմը

Ռուսաց արեւմտեան ճակատում՝ վերջին շաբաթուայ ընթացքին ռազմական մեծ փոփոխութիւն կատարուեց։ Գերմանական բանակը կարողացաւ պատռել Ռիգայի ճակատը և գրաւել Ռիգան՝ համանուն ծոցի վրայ գտնուող պատերազմական մեծ նշանակութիւն ունեցող նաւահանգիստը։

Ռուսական համեմատաբար գերազանց ուժ ներկայացնող բանակները մէկը միւսի ետեւից սկսան նահանջել և ցրուել ոչխարի հօտի նման։ Թշնամին խելայեղօրէն արշաւում է Պետրոգրադի վրայ։ Պետրոգրադում մեծ յուզում է առաջ բերել Ռիգայի անկումը։

Օգոստոսի 23-ին մեր զօրքերը նահանջեցին Աա գետից միւս ափը. Պսկովի ճանապարհի վրայ թշնամին յարձակւում գործեց և 50 վերստ Ռիգայից հիւսիս-արեւելք յառաջացաւ։ Մեր զօրքերը, որ գործում էին Ռիգայի արեւելեան մասերում, թշնամու ճնշման տակ յետ քաշուեցին Զիգեալ-Լեմբուրկ գիծը։ Ռիգայի ծովածոցն եկան գերմանական սուզանաւեր։ Դուինայի ուղղութեան վրայ եռանդուն թնդանօթամարտ է։

Ռումանական ճակատում՝ թշնամին Սլոբոդզէի շրջանում շարունակում է գրոհներ, գրաւելով երկու բարձունք. մեր զօրքերը հակայարձակումով վերականգնեցին կորցրած դիրքերը և գերեցին 200 հոգի։

Անգլօ-ֆրանսական ճակատում՝ անգլիացիք օգոստոսի 22-ին յանկարծակի յարձակում սկսեցին Լանսից հարաւ. Թշնամու կորուստները մեծ են։ Լա Բուսէից հարաւ-արեւելք յետ է մղուած թշնամու գրոհը։ Շամպայնում ֆրանսացիք գիմել են աջող յարձակումների։

Իտալական ճակատում՝ Բրեստովիցում իտալացիները շարունակ առաջ են գնում։ Իւլեան Ալպերում օգոստոսի 22—23 իտալացիների վերցրած գերիների թիւը հասնում է 8 սպայի և 339 զինուորի։ Շեզրի հովտում խլուած են 1 թնդանօթ և 3 գնդացիր։

## ԿՈՉ ԳԻՒՂԱՑՈՒԹԵԱՆԸ

Պետրոգրադ, 22 օգոստ.—Գիւղացիական պատգամաւորների համառուսական խորհրդի գործադիր կոմիտէն դիմել է գիւղացութեանը մի կոչով, որի մէջ ի միջի այլոց, ասում է. Փրկեցէք ազատ հայրենիքը։ Նրան մահացու վտանգ է սպառնում։ Աղատ Ռուսաստանին, նրա բանակին, շատ գիւղերին և քաղաքներին սով է սպառնում, Ռուսաստանի մի քանի տեղերում սովն արդէն սկսուել է։ Ոսկրացած ձեռքով նա բռնում է ժողովրդի և բանակի բուկը։ Դէհ, փրկեցէք այժմ ազատութիւնը, փրկեցէք հայրենիքը, հողը, ազատութիւնը և ժողովուրդը։ Հաց տուէք, շուտով հասցրէք, մի յապաղէք, հացի գները չեն բարձրացուի, որովհետև գնի բարձրացումը վտանգաւոր է պետութեան համար և անօգուտ է ժողովրդի համար։ Գործադիր կոմիտէն պաշտպան է կանգնած գիւղացութեան շահերին, աշխատում է գիւղին անհրաժեշտ մթերքներ մատակարարել տալ հաստատուն գներով

Նա բացարձակապէս ասում է ձեզ—ժողովրդի կարիքները լիովին բաւարարելու հնարաւորութիւն չկայ։ Հասել է մեծ ժամը։ Թըշնամին դռան առջևն է, բանակը երերում է, երկրի մէջ տարաձայնութիւններ կան և սով է տիրում։ Զարթիր, մեծ ժողովուրդ, Երկրագործ, վճռւում է քո բաղդը, լարիր ուժերդ, փրկիր հայրենիքը»։

## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎ

*Ստոկհոլմ, 24 օգոստ.*—Ստոկհոլմի սոցիալիստական խորհրդաժողովի կազմակերպիչ կոմիտէն հրաժարուեց խորհրդաժողով հրաւիրելուց, նկատի առնելով անցագրային հարցի դժուարութիւնները։ Հենդերսոնը յայտնեց, որ Ստոկհոլմի խորհրդաժողովը չի կայանալ, մինչև բանուորական կուսակցութիւնները համաձայնութեան չը գան։

*Լոնդոն, 22 օգոստ.*—Հենդերսոնը հետևեալը յայտնեց մամուլի բիւրոյին. «Միջդաշնակցական խորհրդակցութեան մէջ երևան եկած տարաձայնութիւնները թէ առանձին ֆրակցիաների միջև և թէ ազգային կազմակերպութիւնների միջև ոչ միայն վըճռական, այլ և կործանարար են, ուստի չի կարող խօսք լինել որևէ խորհրդաժողովի մասին, քանի որ չեն վերացուած այդ տարաձայնութիւնները»։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկ. Աբասթումանի ճիւղի վարչութիւնը շնորհակալութիւն է յայտնում Բաթումի բնակիչ պ. Մկրտիչ Իւանեանին՝ նրա նուիրած մի հարիւր ռուբլու համար իր վաղամեռիկ որդի Յովհաննէսի մահուան յիշատակին։

Շնորհակալութիւն նոյնպէս և պ. պ. Արմենակ Գէորգեանին և Միքայէլ Եսայեանին, որոնք սիրայօժար կերպով յանձն առան ճիւղիս օգտին հանգանակութիւն անել, որով և գոյացած 220 ռ. ստացուեց նրանցից։

*Աբասթումանի վարչութիւն*

Կ. Հ. Բ. Ընկ. Դիլիջանի վարչութիւնը խնդրում է թոյլ տալ շաբաթաթերթիդ միջոցով յայտնել խորին շնորհակալութիւն տ. Հերսիլիա Մինաևիչ Թումանեանին, որը նուիրել է տեղիս գըրադարանին հարիւր ռ. իր հանգուցեալ մօր՝ Եղիսաբէթ Զուլ-ևանի հոգեհանգստի առթիւ։

Վարչ. գանձապահ՝

*Ս. Սարգսեան*

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

## Յայտարարութիւններ

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը յայտնում է ի գիտութիւն Ընկերութիւնից նպաստ ստացող դպրոցների հոգաբարձութիւններին և ճիւղերին, թէ՝ 1917/18 ուս. տար. ընթացքում ևս այդ դպրոցները ստանալու են նպաստներ Ընկերութիւնից, մինչև 200 ռ. ստացողները 2 —ից մինչև 50 տոկոս յաւելումով, իսկ աւելի ստացողները 25 տոկոս յաւելումով։

Խորհուրդը խնդրում է այդպիսի դպրոցների հոգաբարձութիւններից և ճիւղերից վաղօրօք հոգալ բանալ դպրոցները, որովհետև այն դպրոցները, որոնք մինչև առաջիկայ սեպտեմբերի 20-ը բացուած չեն լինի, կը զրկուեն նպաստներից։

## ԱՆԳԼԻԵՐԷՆ ԵՒ ՖՐԱՆՍԵՐԷՆ

Ամերիկայից վերադառնալէս յետոյ, որոշած եմ հրապարակային անգլ. մի դասընթացք սկսել յառաջիկայ սեպտ. 10-էն վերջ։ Ուսանողութեան ալ պատեհութիւն մը տալու համար որոշած եմ երեկոյեան ժամը 8—9 լոկ երկսեռ աշակերտներ ընդունել։ Ֆրանսերէնի բաժանմունքը պ. Կամզանն ալ ֆրանսերէն պիտի դասաւանդէ ցանկացողներուն։ Պայմաններու մասին գրել Մէժէվայեա փող. № 28 կամ անձամբ տեսնել գիս ժամը 6—7։

4—1 *Ե. Ս. Սահակեան*

Կովկասի Հայոց Բարեգործական Ընկ. նպաստով պահուող դպրոցների համար հարկաւոր են

### ՈՒՍՈՒՑԻՉ-ՈՒՍՈՒՑՉՈՒՀԻՆԵՐ

ցանկացողները պէտք է դիմեն գրասենեակ. Աբաս-Աբաթեան հրապ. № 7։

Հայկ. Կենտ. Կոմիտէի հովանաւորութեան տակ գտնուող որբանոցների համար հարկաւոր են միջնակարգ կրթութեամբ հմուտ փորձառու կառավարչուհիներ եւ կառավարիչներ։ Ցանկացողները թող դիմեն Կոմիտէի գրասենեակը, Абасъ-Абадская, 7.

**Կովկասի Հայոց Բարեգործ. Ընկ. դպրոցների համար հարկաւոր է ՏԵՍՈՒՉ։ Պայմանների մասին դիմել Ընկեր. գրասենեակը.**

Абасъ-Абадская, № 7. 3—2

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1